1917 № 19—ՄԱՅԻՍԻ 21

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ, ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արասաքաղեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ“. Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից
Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։
Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։
Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



«ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-ի այն բաժանորդները, որոնք մինչեւ հիմա չեն վճարել թերթի 1917 թուի բաժանորդագինը, խնդրում ենք մինչեւ յունիսի 1-ն անյապաղ ուղարկել։

### ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎ

Կիրակի, մայիսի 28-ին, երեկոյեան ժամը 7½-ին նշանակուած է Կովկասի Հայոց Բարեգործ. Ընկերութեան տարեկան ընդհանուր ժողովը, ընթերցարանի դահլիճում (Արաս-Արաքեան հրապ. № 7)։

## ԺԱՄԱՆԱԿԸ ԽՈՐՀՐԴԱՒՈՐ Է

Յեղափոխական շարժումը լայնածաւալ Ռուսաստանում շարունակում է իւր ընթացքը դէպի առաջ։

Նա խորտակում է հին կարգերի մնացորդները, անհետացնում է մութ ուժերը, մաքրում է ազատութեան ճանապարհը ամեն տեսակ խոչընդոտներից։

Յեղափոխական շարժումն չի դադարելու մինչև որ Սահմանադիր Ժողովը չարտասանի իւր հեղինակաւոր խօսքը, թէ ինչ ձև է ընդունելու Ռուսաստանի քաղաքական կազմը, մինչև որ Սահմանադիր Ժողովը չը մշակի և չը յայտարարի հիմնական օրէնքներ պետական կազմի և մի շարք գերագոյն և ժողովրդի մաքերը ալեկոծող հարցերի մասին, ինչպէս՝ հողային, ազգային ինքնորոշումն և այլն։

Ազատագրութեան գործը անընդհատ խորացնում է իւր արմատները ժողովրդական զանգուածների գիտակցութեան մէջ. արհամարհանքով և զզուանքով է յիշւում հինը։

Սակայն մինչև նուաճած ազատութեան ու նոր իրաւակարգի կատարեալ ամրապնդումն, կարող են դեռ շատ անսպասելիքներ, փոթորիկներ տեղի ունենալ թէ հակայեղափոխական և մութ տարրի կողմից և թէ պատերազմի ընթացքից։

Եթէ նոր կառավարութեան չաջողուի իւր վարչական մարմիններով և յեղափոխական ժողովրդի աջակցութեամբ փտանգաւոր երևոյթները անմիջապէս տեղն ու տեղը ոչնչացնել, արմատախիլ անել. եթէ նա չը կարողանայ ժողովրդի մէջ կարգ և խաղաղութիւն պահպանել, եթէ նա չը կարողանայ զօրքի մէջ մացնել կարգապահութիւն (դիսցիպլինա) և վառել նրա սիրտը հայրենասիրական կայծով, որպէս զի զօրքը, թողնելով միտինգները և անվերջ համագումարները, անձնազոհութեամբ դիմադրէ թշնամուն, որը սպառնում է պատռել պատերազմական ճակատը և ներս խուժել, այն ժամանակ, ի հարկէ, կարող է վտանգուել և նոյնիսկ կործանուել յեղափոխական ուժերով ձեռք բերուած Ռուսաստանի ազատութիւնը։

քով հանգստացնեն յուզուած ժողովուրդը, հարկաւոր կարգադրութիւններ անելով. այն ժամանակ կարելի է վըստահ լինել, որ մեզանում կարգը և խաղաղութիւնը չը պիտի խանգարուի, եթէ մանաւանդ նոր ստեղծուող ընդհանուր ձայնատւութեամբ տեղական գործադիր մարմինները էլ բաղկացած լինին դեմոկրատիկ տարրերից և իրենց կոչման բարձրութեան վրայ կանգնած լինին։

Մինչև որ երկրի մէջ չը հաստատուի խաղաղութիւն և կարգապահութիւն, կառավարութիւնն անկարող կը լինի աւարտել յեղափոխական գործը և ամրացնել Ռուսաստանի ազատութիւնը։

Իսկ երբ Ռուսաստանի ազատութիւնը կը հաստատուի ամուր կերպով, երբ այդ ազատութեանը սպառնացող վտանգը կանհետանայ, այն ժամանակ կը կատարուեն և Կովկասի ազգերի իղձերն ու սպասելիքները։

Մեր երկրի բաղդը ու լուսաւոր ապագան կախուած է ազգերի համերաշխութիւնից և համագործակցութիւնից։

Ժամանակ է, որ Կովկասի ազգերի մէջ արտայայտուի այս փրկարար գիտակցութիւնը։

Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

## «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-Ի ՍԵՓ. ՀԵՌԱԳՐԵՐ

*Բաղդադից հեռագրում են խմբագրութեանս.*

*Գաղթականութեան թիւը 250 է. աշխատում ենք հաւաքել։ Հարկաւոր է անմիջական օգնութիւն։*

# Համաշխարհային պատերազմը

Ռուսաց Արեւմտեան ճակատում վերջին շաբաթուայ ընթացքում եղել են միայն առաջապահ զօրամասերի ընդհարումներ։

Կովկասեան ճակատում թիւրքերը շարունակ փորձում են յարձակուել ռուսական դիրքերի վրայ, բայց միշտ յետ են մղւում. Թիւրքերի մի խումբը Վանից հարաւ ռուսական դիրքերին մօտեցաւ, բայց կրակով յետ շպրտուեց։

Ֆրանս-Անգլիական ճակատում առանձնապէս կռիւները սուր կերպարանք են ստացել. գերմանացիք օժանդակ ուժեր ստանալով յարձակումներ են գործում։ Մայիսի 14-ին թշնամին մեծ ուժով երեք անգամ յարձակւում գործեց Շամպանիում ֆրանսական դիրքերի դէմ, բայց յետ մղուեց։

Ալզասում՝ Ուֆգոլցի շրջակայքում ֆրանսացիք պատռեցին թշնամու խրամատների երկրորդ գիծը։

Օդային կռիւները այս ճակատում կատաղի բնոյթ են ստացել. մայիսի 10-ին, 11-ին և 12-ին թշնամու 17 օդանաւ վայր ընկան և ջախջախուեցին։

Իտալական ճակատում մի քանի օրից ի վեր կատաղի ճակատամարտեր են տեղի ունենում Կարսոյի շրջանում։ Իտալացիները փայլուն գրոհից յետոյ հասան Մոն-Ֆալկոնի—Դոնինո գծին՝ Սան-Ջիօվաննիից հիւսիս-արեւելք։ Պլավայի շրջանում իտալացիները ձեռք բերին 438 գերի և պատերազմական աւար։

# Ներքին Տեսութիւն

## ԿՈՎԿԱՍԵԱՆ ՋԵՐՄՈՒԿԱՅԻՆ ԱՌԱՋԻՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԱՌԹԻՒ

Մայիսի 6—10 Թիֆլիսում կայացած ջերմուկային համագումարը թէև բազմամարդ չէր, շնորհիւ ներկայ կեանքի ծանր պայմանների և ճանապարհների հաղորդակցութեան դժուարութեան, բայց մեծ հետաքրքրութիւն առաջ բերեց այն շրջաններում, որոնք խորապէս գիտակցում են՝ թէ Կովկասի բարգաւաճման համար համագումարի որոշումները ինչ մեծ նշանակութիւն կարող են ունենալ, եթէ նրանք իրագործուեն կեանքի մէջ։ Զեկուցումներ եղան Աբասթումանից, Դիլիջանից, Բորժոմից, Կոբուլետից, Ցխալտուբայից, Սուխումից, Գելենջիկից, Անապայից, Բաղալպաշինսկից, Տիբերդայից, Գարեաչւոդսկից և այն 80-ի չափ վայրերից, որոնք քիչ թէ շատ ուսումնասիրուած են։ Բայց մենք լաւ գիտենք, որ Կովկասում կը գտնուեն կրկնապատիկ բուժավայրեր, որոնց մասին ոչ մի ուսումնասիրութիւն չի եղել և նոյնիսկ միայն տեղացիներին են նրանք յայտնի։

Այդ զեկուցումներից պարզուեց, որ Կովկասը իւր գեղեցկութեամբ և կլիմայի առաւելութիւններով կարող է առաջնակարգ տեղ բռնել Եւրոպական ջերմուկների մէջ և մեծ քանակութեամբ օտարներ գրաւել։ Մինչդեռ զուրկ լինելով ամենատարրական յարմարութիւններից, մենք ոչ թէ օտարներ չենք գրաւում, այլ մեր ունեւոր դասակարգից մեծամասնութիւնը ամառները գնում է արտասահման։

Յաճախ վէճի եմ բռնուել այդ առթիւ և ինձ առարկել են. «Իրաւ, մեծ փողեր ենք ծախսում, բայց դրա փոխարէն ստանում ենք ամեն տեսակ յարմարութիւններ, հանգստանում ենք առօրեայ տնտեսական հոգսերից և բժշկւում մեր հիւանդութիւններից, իսկ մեզ մօտ նոյնքան փող ծախսելով աւելի քայքայւում են մեր ջղերը»։ Դժբաղդաբար դա ճիշտ է։ Մեզ մօտ ամարանոց գնալը մի տանջանք է. շաբաթներ առաջ հոգս պիտի քաշես ճանապարհորդութեան մասին, ամբողջ տունդ, տեղդ պիտի հաւաքես, համարեա ամեն բան հետդ պիտի տանես։ Ամարանոցում, փոքր բացառութեամբ, շինութիւնները անյարմար են, մթերքների պակասութիւն է զգացւում, փողոցները կեղտոտ են պահւում, շատ տեղերում նոյնիսկ աղբիւրի ջուր չկայ, բժիշկ չը կայ, կարգին դեղատուն չկայ... այդ հանգամանքները, ի հարկէ, չեն կարող նպաստել առողջութեան և հանգստութեան։ Մինչդեռ մենք, քաղաքացիներս, մեծ կարիք ենք զգում գոնէ երկու ամիս բնութեան ծոցում կազդուրելու մեր քայքայած առողջութիւնը, որ հետեւանք է քաղաքային աննորմալ կեանքի։ Մենք ապրում ենք քարէ վանդակների մէջ, ներս ենք շնչում նեխուած օդը, կուլ ենք տալիս փոշի, լի մանրէներով և խիտ վարագոյրներով փակւում ենք արևից, առանց օդի բնութեան մէջ ամեն բան քայքայւում է։ Քաղաքներում մենք բնութեան երես չենք տեսնում և ես վստահութեամբ կարող եմ ասել, որ մեզանից շատերը նոյնիսկ գաղափար չունեն այն գեղեցկութեան մասին, որին ականատես են գիւղացիները, երբ բնութիւնը զարթնում է ձմեռային քնից և կանաչ գորգերով ծածկում գետինը։

Գիտական հետազօտութիւններից յայտնի է, որ մաքուր օդը և արևը մեծ դեր են կատարում բժշկութեան մէջ։

Եւրոպայում վաղուց հասկացել են այդ և հիմնել են բազմաթիւ բուժարաններ։ Շվէյցարիայում ահագին հիւանդանոցներ են շինուած արևային լոգանք ընդունելու համար։ Արևով բժշկւում են նոյնիսկ թոքախտը, որը մարդկութեան ամենասոսկալի թշնամիներից մէկն է։

Շնորհիւ ձեռք առնուած առողջապահական խելացի միջոցների և մատչելի բուժավայրերի՝ այնպիսի վատ կլիմայ ունեցող երկիրը, ինչպէս Անգլիան է, շատ աւելի պակաս զոհեր է տալիս թոքախտին քան Ռուսաստանը, որը Կովկասի և Ղրիմի պէս գոհարներ ունի։

Յայտնի է նոյնպէս, որ հիւանդութեան առաջն առնելն աւելի հեշտ է և ձեռնտու քան թէ հիւանդութեան բժշկելը։ Մեր սերունդները տարէց տարի թուլանում են և մեր գոյութիւնը նոյնիսկ վտանգ է սպառնալու, եթէ խիստ միջոցներ ձեռք չառնենք մեր ֆիզիքականի զարգացման ու ամրապնդման համար։ Անհրաժեշտ է մեծ կենտրոնների շրջակայքում կառուցանել էժանագին, յարմար բնակարաններ, ուր չունեւոր դասակարգը ամառուայ ամիսներում կազդուրէ իւր քայքայած առողջութիւնը։ Այն հեռաւոր բուժավայրերում մանաւանդ, ուր հանքային ջրեր կան, պէտք է միացնել միմեանց յարմար ճանապարհներով, ժողովրդական բուժարաններ շինել այնտեղ և ստեղծել այնպիսի պայմաններ, որ մատչելի լինեն աշխատաւոր դասակարգին։

Մեծ գումարներ է հարկաւոր այս ծրագիրը իրագործելու համար, բայց այդ փողերը կորած չպիտի համարել, որովհետև հանրամատչելի բուժարաններին կից կարելի է շինել շքեղ բուժարաններ հարուստների համար, և այն գումարները, որ ծախսւում են եւրոպական ջերմուկներում, կը մնան երկրում և կը ծածկեն բոլոր ծախսերը։ Համագումարը ի միջի այլոց որոշեց դիմել կառավարութեանը, որ գումարներ յատկացնի մեր բուժավայրերի բարեկարգութեան և հաղորդակցութեան յարմարութիւն ստեղծելու համար։ Ողջունում ենք համագումարի առաջին քայլերը և լիայոյս ենք, որ կառավարութիւնն աչքի առաջ ունենալով իւր և ժողովուրդի շահերը, անուշադիր չի թողնելու այդ դիմումը։

ԻՇԽ. ՄԱՐԻԱՄ ԹՈՒՄԱՆԵԱՆ

---

# ԴՊՐՈՑՆԵՐԸ ՊԷՏՔ Է ԱԶԳԱՅՆԱՑՆԵԼ

*(Հայ Ուսուցչական Համագումարի առթիւ)*

Ազգային լեզուի և դաստիարակութեան հարցը, Ռուսաստանում ապրող մանր ազգութիւնների ամենաէական խնդիրներից մէկն է։

Ռուսաստանի հին կառավարութիւնն այնպիսի կաշկանդող ու ճնշիչ պայմաններ էր ստեղծել, որ կամաց կամաց մանր ազգութիւնները զրկւում էին իրենց նուիրական իրաւունքներից և նրանց նոր սերունդը զրկւում էր մայրենի ոգով դաստիարակուելու հնարաւորութիւնից։

Եւ ահա ստեղծուել էր այնպիսի մի սերունդ, որ իւր ազգի կենտրոնական արմատից խորթացած լինելով, դարձել էր երերուն և գորշ մի զանգուած, որ ոչ մի կերպով կարող էր օգնութեան գալ իւր ազգի կարիքներին, ղեկավար հանդիսանալ նրա գործերին և հետևաբար այդ կերպով ծառայել ընդհանուր հայրենիքի և պետութեան շահերին։

Ներկայ յեղափոխական կառավարութիւնը, սակայն, ընդարձակ իրաւունքներ է տալիս մանր ժողովուրդներին երևան բերելու իրենց էական կարիքները և նրանց իրականացման աշխատելու։

Առայժմ հրապարակ դրուելիք ազգային գլխաւոր պահանջներից մէկը համարւում է դպրոցների ազգայնացման խնդիրը։

Իւրաքանչիւր ազգութիւն՝ համաձայն իւր թուին ու պետութեան տուած նիւթական օժանդակութեան՝ պէտք է օգտուի այն գումարից, որ ամեն տարի պետութիւնը տրամադրում է դպրոցական գործին։ Այդ գումարով նա կը կազմակերպի իւր դպրոցական վիճակը և հիմք կը դնի ազգային առողջ դաստիարակութեան։

Այդ ոչ միայն կը դառնայ մի զօրաւոր պատնէշ մանր ազգերի ապազգայնացման ու այլասերման դէմ, այլև կօժանդակէ ռուսական մեծ հայրենիքի համար առողջ ու օգտակար քաղաքացիներ պատրաստելու վսեմ գաղափարի իրականացման։

Հայ ուսուցչութիւնը, որպէս մեր ժողովրդի կուլտուրական գործի աշխատաւոր դասակարգը, բնականաբար պիտի օգտուէր ներկայ պատեհ վայրկեանից դպրոցների ազգայնացման կարևոր խնդիրն արծարծելու։

Ողջունելով Կովկասի հայ ուսուցչութեան համագումարը, լիայոյս ենք որ նա ամենաեռանդուն կերպով պիտի պաշտպանի մայրենի կրթութեան հրատապ խնդիրը և միւս ժողովուրդների ուսուցչութեան հետ համերաշխելով հեղինակաւոր ու գործնական պիտի դարձնի իւր ձայնը։

Մենք լիայոյս ենք նաև, որ համագումարում ծեծուած և մեր դպրոցական ներքին կեանքին վերաբերող մի շարք կարևոր հարցերը, ինչպէս օրինակ, Գէորգեան Ճեմարանի Երևան փոխադրումը, մանկավարժական օրգան և այլն, պիտի իրագործուին շուտով կեանքի մէջ, քանի որ անսահման ազատութիւն և ոսկի պատեհութիւն կայ մեր առաջ։

Ա. ԱՐԾԻՒԵԱՆ

---

# ԳԱՒԱՌ

*Քարվանսարա, 12 մայիսի*

Կ. Հ. Բ. Ընկ. Քարվանսարայի ճիւղի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացել է յօգուտ Ընկ. և որբանոցի հետևեալ նուէրները.— Գ. Գ. Ալիխանեանից՝ 100 ռ. ի յիշատակ իւր վաղամեռիկ Տիգրան որդու. Շուշան Զարուխեանից՝ 20 ռ. ի յիշատակ իւր Գրիգոր ամուսնու. Շամշադինցիներից՝ 60 ռ., Զինուոր Կուզմինից՝ 5 ռ., Ո. Պապինսկի յիշատակին՝ 10 ռ.։ Ամերիկացի հիւրերից՝ 4 վերմակ։

---

*Ցարսկիէ-Կոլոդցի*

Ապրիլի 28-ին այստեղ եկան 175 երկու սեռի որբեր։ Այսօր գալու են դարձեալ 130։ Որբերի կառավարչուհին նշանակուած է տ. Միքայէլեանը։ Յօգուտ որբերի Արտէմ Օթարեանը նուիրեց 100 ռ., զինուորները 30 ռ.։ Զօրքի հրամանատարը ձրիաբար տուեց որբերին մէկ բանջարանոց՝ մէկ դեսեատին տարածութեամբ, բանջարներ ցանելու համար։ Ռէվազ Քոչարեանը ձրիաբար տուեց գութան և եզներ հողը վարելու համար։

Որբերն եկան Ծնորիս-Ծղալի կայարանից սայլերով և ֆուրգոններով։ Նրանց դիմաւորելու համար երկաթուղու կայարանն ընդառաջ գնաց Յակոբ քահանայ Գրիգորեանը։ Բացի ուսումից, որբերը սովորելու են նաև արհեստ։ Բոլոր երեխաներն առողջ են և զուարթ։ Ժողովուրդը շատ սիրով է վերաբերւում որբերին։

Կ. Հ. Բ. Ը-թեան Ցարսկիէ-Կոլոդցի ճիւղի վարչութեան մէջ տեղի ունեցան փոփոխութիւններ։ Նախագահ ընտրուեց Ռէվազ Քոչարեան, անդամ-քարտուղար՝ Յակոբ քահանայ Գրիգորեան, գանձապահ՝ Լևոն Ամիեան, անդամներ՝ Աբգար Լիանոզեան և Խաչատուր Բարսամեան։

Յ. քահ. ԳՐԻԳՈՐԵԱՆ

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

## ԽՈՐՀՈՒՐԴ

*Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը մայիսի 13-ին կայացած նիստում արաւ հետևեալ որոշումները.—*

*ա) Նշանակել Ընկերութեան տարեկան ընդհանուր ժողովը կիրակի, մայիսի 28-ին, երեկոյեան ժամը 8-ին, ընթերցարանի դահլիճում։*

*բ) Խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեանի զեկուցման համաձայն, Ընկերութեան բազմաթիւ ճիւղերի գործիչներից մի համագումար կազմելը գտնելով անհրաժեշտ և հրատապ, որոշեց այդ համագումարը նշանակել հառաջիկայ յունիսի վերջերին, որի համար ընտրել մի մասնաժողով նախապատրաստական ծրագիր կազմելու։ Այդ մասնաժողովին մասնակցելու համար հրաւիրել պ. պ. Մ. Բերբերեանին, Յ. Տէր-Միրաքեանին, Ա. Սահակեանին և Լ. Փիրալեանին։*

*գ) Աչքի առաջ ունենալով պ. Արշակ Ունանեանի խոշոր նուիրաբերութիւնը դպրոցական գործի համար, տարեկան 12,000 ռ., յանձնարարել դպրոցական մասնաժողովին՝ պ. պ. Ս. Աբովեանի և Յ. Տէր-Միրաքեանի հետ այժմէն իսկ ձեռնարկել կազմելու մի ծրագիր յատկապէս պ. Ունանեանի նուիրաբերած գումարով դպրոցներ բանալու մասին հոգալու, գլխաւորապէս Վրաստանի շրջանում բանալու և որոշելու թէ ինչ տիպի դպրոցներ կարևոր և անհրաժեշտ են ներկայ պարագաներում։*

*— Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Թեմիր Խան Շուրայից Լիւդմիլա Վլադիմիրովնա Կոմարովսկուց յօգուտ փախստականների 10 ռ.։*

*Եղբ. Բողարջեաններից ի յիշատակ հանգ. Միքայէլ Բողարջեանի 500 ռ.։*

Тиф. Лист.*-ի խմբագրութեան միջոցով Վ. Մելքումեանից իւր դուստր Մարիամի յիշատակին 25 ռ.։*

## ՃԻՒՂԵՐ

Ախալցխա.— *Տեղական Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղի վարչութիւնը պատրաստում է, ի միջի այլոց, բաց անել երեկոյեան դասընթացներ քաղաքի հասակաւոր անգրագէտ և կիսագրագէտների համար։*

Օշական գիւղ.— *Օշականում բացուեց Կ. Հ. Բ. Ընկ. նոր ճիւղ, որի առաջին գործը լինելու է Օշականում գրադարան-ընթերցարան հիմնելը։ Նորակազմ ճիւղի վարչութեան անդամներ ընտրուած են. նախագահ՝ Խ. Տ. Մանուէլեան, անդամներ՝ Խ. Փերզիկեան, Կ. Մուրադեան, Ա. Տէր-Յովակիմեան, քարտուղար՝ Ա. Աղաջանեան։*

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ

*13-ն մայիսի կայացաւ Հ. Կ. Կ.-ի հերթական նիստը նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի, ուր եղան հետևեալ զեկուցումներն ու որոշումները.*

*ա) Պ. նախագահը զեկուցեց որ Ախալցխայում և Ծարսկիէ-Կոլոդցում վարձուած են ընդարձակ բնակարաններ Էրզրումից և Խնուսից եկող որբերի համար. բացի այդ կարիք է զգացւում վարձել բնակարաններ և Ջալալ Օղլի տեղափոխել որբանոցներում խտացած որբերի մի մասը։*

*Շատ որբանոցներում կան բազմաթիւ մեծ տղաներ, որոնց որբանոցում պահելը վնասակար է թէ որբանոցի և թէ հենց այդ մեծ տղաների օգտի տեսակէտից. անհրաժեշտ է նրանց առանձնացնել, կրթական պատրաստութիւն ունեցողներին քաղաքի դպրոցներում տեղաւորել, իսկ մնացածներին արհեստների դնել կամ վարժեցնել գիւղական աշխատանքի։ Կոմիտէն հաւանութիւն տուեց նոր որբանոցների բացմանը և որոշեց անմիջապէս շրջաբերականներով տեղեկութիւններ քաղել որբանոցներից հասակաւոր որբ տղաների մասին և ապա նրանց վերադարձնել ծնողներին կամ տեղաւորել զանազան արհեստանոցներում, կամ տալ ուրիշ տեսակ աշխատանքի։ Իսկ որբանոցներում պահել միայն մինչև 14 տարեկան տղաները։*

*բ) Արդանուչի շրջանի գաղթ. դպ. ուսուցիչ պ. Թորիկեանը տուեց մի համառօտ զեկուցում այդ շրջանի որբանոցների, գաղթ. դպրոցների մասին, որից պարզուեց որ ներկայիս այդ շրջանում տեղաւորուած են 230 որբ, ցրուած զանազան գիւղերում, որոնք բոլորն էլ ստանում են կանոնաւոր սնունդ, ունեն նաև մի քանի ձեռք շորեր։*

*Գործերի հետ մօտից ծանօթանալու համար, որոշուեց այդ վայրերն ուղարկել Կոմիտէի լիազօր պ. Կ. Ղազազեանին։*

*գ) Գանձակի քաղաքի կոմիտէի որբերը ամարանոց տանելու համար, որոշուեց յատկացնել 500 ռ. տեղական կոմիտէի նախագահ պ. Լ. Մելիք-Մնացականեանի գրաւոր և բանաւոր խնդրի համաձայն։ Ի նկատի առնելով, որ ամառը որբանոցներում պահանջւում է երեխաների շորերի համար չիթ, որոշուեց գնել 10.000 ռուբլու չիթ։*

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏ. ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

*Մայիսի 3—17-ը ալիւր ուղարկուած է Վան 2 վ., Սանահին՝ 1, Սարիղամիշ՝ 11, Երևան՝ 3, Ալաշկերտ՝ 3, Իգդիր՝ 7, Վաղարշապատ՝ 4, Աշտարակ՝ 3, Ղուրուղուլի՝ 3, Ղարաքիլիսա՝ 4, Ալէքսանդրապոլ՝ 3, Ղամարլու՝ 2, Դիլիջան՝ 1, Քարվանսարա՝ 1։*

*Շաքար ուղարկուած է Վաղարշապատ 1 վ., Ալէքսանդրապոլ՝ 1, Դիլիջան՝ 1 վ. և 500 պ., ընդամենը՝ 3 վ. 500 պ.։*

*Շաքարաւազ ուղարկուած է Վաղարշապատ՝ 1 վ.։*

*Սապոն ուղարկուած է Ալէքսանդրապոլ 400 պ., Ալէքսանդրապոլ՝ 100, Գանձակ՝ 100 և Նոր Բայազէդի, Դիլիջանի, Ելենովկայի, Քարվանսարայի և Ղարանլուղի պահեստներին 400 պ., ընդամենը 1000 պ.։*

*Լոբի ուղարկուած է Վան 200 պ.։ Աղ ուղարկուած է Ալէքսանդրապոլ՝ 1 վ.։*

## ՀԵՌԱԳՐԵՐ

*Դիլման—բժ. Յովհաննիսեանից. Սալմաստի շրջանում գաղթականների դրութիւնն անտանելի է. ցորեն չկայ, գաղթականները վեցերորդ օրն է որ բառիս բուն նշանակութեամբ քաղցած են։ Խնդրում եմ անմիջապէս կարգադրէք Օհանջանեանին՝ բաց թողնի Եւգենիևսկի Նաւակայանից 8000 պ. ցորեն, հակառակ դէպքում գաղթականները կը գաղթեն Վան։*

*Այս առթիւ հեռագրուած է Օհանջանեանին՝ անմիջապէս բանալ Խոյում և Դիլմանում մշտական պահեստներ և ծախել ցորենը Սալմաստի գաղթականներին իսկական գնով։*

*Դիլման—Օհանջանեանից. Պարսկաստանի գաղթականները թշուառ դրութեան մէջ են. հաց բոլորովին չկայ. շատերը կերակրւում են խոտով. մեր ցորենը փրկարար դեր է կատարում. բաց եմ թողել 15,000 պ. ցորեն և կազմակերպել յանձնաժողով ցորեն բաժանելու։*

*Ալաշկերտ—Փարաճանեանից.* Կենտրոնական Կոմիտէն Ալաշկերտի շրջանում բաժանել է 8000 պ. հացահատիկ, 250 գութան, իսկ Գիւղատնտեսական Ընկերութիւնը՝ 13,000 պ. ցորեն։ Ցանքսը վերջացել է. բոլորն էլ սերմացու ստացել են։

*Եկատերինոդար—Մելքոնեանից.* Օվեչկա կայարանից էջմիածին ուղարկեցի 2 վ. ալիւր, Կրիլովսկայից Թիֆլիս՝ 2, Կարամիկից Սարիղամիշ՝ 4, Գէորգիևսկից Ղարաքիլիսա՝ 1, Սարիղամիշ՝ 2։

# Քրոնիկոն

Տպարանական դժուարութիւնների պատճառով «Համբաւաբեր»-ը մինչև յունիսի մէկը լոյս է տեսնելու 8 էջից բաղկացած։

— Ամսիս 28-ին նշանակուած է Կ. Հ. Բ. Ը. թեան տարեկան ընդհանուր ժողովը՝ մի քանի ընտրութիւններ կատարելու և 1916 թուի հաշիւը հաստատելու համար։

— Թիֆլիսի քաղաքային վարչութեան անդամ Մ. Աթաբէգեանը և Դումայի իրաւասու Ս. Տիգրանեանը հրաժարուել էին իրանց պաշտօններից։ Սակայն Դուման չընդունեց այդ հրաժարականները և մայիսի 15-ին կայացած նիստերում միաձայն որոշեց խնդրել նրանց՝ յետ վերցնել հրաժարականները։

— Ա. Ի. Չխէնկէլիի մօտ կազմուել է 7 հոգուց բաղկացած մի յանձնաժողով, որը զբաղուելու է զանազան ազգերի միջև առաջ եկած խնդիրների և տարաձայնութիւնների քննութեամբ։ Խորհրդակցութեան անդամներ են ընտրուել՝ Ս. Յարութիւնեան, Գ. Ժուրուլի, Խասրով փաշա Բէգսուլթանով և 1-ական ներկայացուցիչներ զինուորական և բանուորական Պատգ. Խորհրդներից, որոնք ընտրելու են միացած 2 հոգին։

— Անդրկովկասեան գիւղացութեան համագումարը յետաձգուած է յունիսի 5-ին։

— Մայիսի 11-ից Թիֆլիսի Գայիանեան օրիորդաց դպրոցի դահլիճում բացուեց հայ ուսուցչական համագումարը. պրեզիդիումի մէջ ընտրուեցին Ս. Տիգրանեան, Արտ. Աբեղեան և Ար. Երզնկեան։

— Ար. Ղուկասեանի կտակի մասին «Баку» թերթը յայտնում է.— Հանգուցեալը կտակել է 9 միլիոն ռ. հայկական լուսաւորական-բարեգործական գործերի համար, այն պայմանով՝ որ ծախսուեն միայն այդ դրամագլխի տոկոսիքը. իսկ դրամագլուխը բաժան-բաժան չլինի։ Միայն հայ ժողովրդի ցանկութեամբ ամբողջ դրամագլուխը կարող է գործածուել որևէ խոշոր գործի։

— Թիւրքիայից գրաւուած վայրերի վարչութեանց պաշտօնեաների համագումարը փակուեց մայիսի 15-ին, զինուորական համագումարի որոշումով, որը գտել է, որ այդ համագումարը լիազօր չէ նման հարցեր քննելու մէջ։

— Անդրկովկասեան կոմիսարիատի շրջանային խորհրդակցութիւնը վերջացրեց միլիցիայի կազմակերպման ծրագիրը։ Միլիցիայի համար հրահանգներ մշակելու առթիւ կազմուած է առանձին յանձնաժողով, որի մէջ մտնում են Ս. Ս. Յարութիւնեան, Ա. Ի. Խատիսեան, Գ. Բ. Գվազավա և ճարտարապետ Բերութեան։

— Վերջացաւ Երևանում գումարուած արևմտահայերի համագումարը. ընտրուել է 25 անձից բաղկացած մի մարմին։

— Երևանում բացուել է Թրքահայ գաղթականների շրջանային ժողովը Ռոստոմի նախագահութեամբ։

— Մեզ յայտնում են, որ Թիֆլիսի մի խումբ արևմտահայ գրողներ հիմք են դրել Արևմտահայ գրասէրների միութեան, որի նպատակն է համախմբել Կովկասում ապաստանած արևմտահայ տարագիր գրողները և զարկ տալ արևմտահայ գրականութեան. արդէն կազմուած է նորակազմ միութեան ծրագիրը։

— Ստացանք Սուրէն Միկիրեանի «Կամաւորի յիշատակարան», գինն է 60 կ.։

— Ստացանք Թադէոս Աւդալբէգեանի «Միքայէլ Նալբանդեան», գինն է 40 կ.։

# Արտաքին տեսութիւն

## Պ. Ա. ԿՐԱՊՈՏԿԻՆԸ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ*)

### ԵՐԿՐՈՐԴ ՆԱՄԱԿ

I

Թանկագին բարեկամ,

Ձեզ համար ի հարկէ վշտալի և ծանր է տանել մեր շուրջը կատարուող հակասութիւնները։ Դուք գրում էք թէ ձեզ տանջում է այն միտքը, որ մի՞թէ ներկայումս տեղի ունեցող ահագին չափերի հասած պատերազմը կարող է ազատագրական լինել։ Եթէ մենք առաջ գիտենայինք, որ Գերմանիայի հետ պատերազմը կարող է ազատագրական լինել՝ ապա ինչո՞ւ համար էր մեր հակամիլիտարիզմը, մեր ֆրազներն ընդհանուր գործադուլի մասին և այլն և այլն։ Այո, ես հասկանում եմ, որ այս հարցերը կարող են տանջալից լինել։ Բայց այս նրանից է, որ հակամիլիտարիզմի քարոզիչների, պատերազմի դէմ աշխատողների գործունէութեան մէջ մեծ սխալ կայ։ Նրանք կարծում էին թէ պատերազմի դէմ քարոզներով կարելի է կռուել, կարելի է պատերազմի առաջն առնել, թէև պատերազմն անխուսափելի դարձնող բոլոր պատճառները շատ զօրաւոր են և մնում են։

Նրանք գրում են թէ պատերազմի պատճառը եւրոպական կապիտալիզմն է իւր բոլոր յայտնի հետևանքներով։

Միւս կողմից էլ նրանք հաւատում էին, որ բաւական է ընդհանուր գործադուլ յայտարարել բոլոր այն երկիրներում, ուր պատրաստ էին իրար դէմ դուրս գալու, և պատերազմն անկարելի կը դառնայ։

Մի առանձին հրաշքով կապիտալի ահագին ուժը և նրա հպատակ ֆակտորներն անհետանում են, խախտւում ու ոչնչանում. այսպէս էին հասկանում գործադուլի նշանակութիւնը։

Այն մարդկանց կարծիքով կապիտալի ուժը ոչնչանում էր ոչ միայն Ֆրանսիայում, այլ և Գերմանիայում, այն Գերմանիայում, որ Ֆրանսիայի գաղութները յափշտակելը, նրա նուաճած մասերին տիրելը համարում էր մի անհրաժեշտ քայլ գերմանական կապիտալը զարգացնելու համար։

Հասկանալի է, որ հակամիլիտարիստները լաւ չէին ըմբռնում կապիտալիզմի և պատերազմի մէջ գոյութիւն ունեցող կապի նշանակութիւնը։ Նրանք շատ մեծ նշանակութիւն էին տալիս անձնական, անհատական չար կամքին։

Վերջին տասներկու տարուան ընթացքում, երբ պարզ երևում էր, որ Գերմանիան պիտի յարձակուի Ֆրանսիայի վրայ, ես աշխատում էի համոզել ֆրանսիացի մեր ընկերներին, թէ պատերազմի դէմ քարոզը ուրիշ բան է, իսկ գլխաւորն այն է, թէ ի՞նչ դիրք պէտք է բռնել, երբ Գերմանիան յարձակուի

*) Տես «Համբաւաբեր» № 18։

Թէ որքան լուրջ է դրութիւնը, դրան իբր փայլուն ապացոյց կարող է ծառայել բարձրագոյն հրամանատար գէն. Ալեքսէևի ճառը, որը մօտ օրերս արտասանեց երկու հազար պատգամաւոր սպաների համագումարում։ «Լինենք անկեղծ, պարզ—ասում է գէն. Ալեքսէևը—և խոստովանենք, որ ռուսաց զօրքի միջից ընկել է զինուորական ոգին։ Այն զօրքը, որ դեռ երէկ իր հզօրութեամբ սարսափ էր ներշնչում, այժմ հասցել է թշնամու առաջ օրհասական թուլամորթութեան մէջ։ Առաջուայ նրա աւանդական հաւատարմութիւնը դէպի հայրենիքը փոխարինուել է խաղաղութիւն և հանգստութիւն ձեռք բերելու ձգտումով։ Հայրենիքը վտանգի մէջ է. մեզ վրայ է ծանրացել սրբազան պարտականութիւն՝ փրկել հայրենիքը, ապա՝ միանալ յանուն հայրենիքի ազատութեան»։

Վայրկեանը նշանաւոր է և խորհրդաւոր։

Համայն Ռուսաստանի բոլոր կենդանի և ազատութեան գաղափարով տոգորուած ոյժերը ամբողջ թափով պէտք է նետուեն հայրենիքի փրկութեան մեծ գործի մէջ. ամեն մի գիտակից քաղաքացի պարտաւոր է գործնականապէս աջակցել Ժամանակաւոր Կառավարութեան՝ որպէս զի ներքին խռովութիւններ և անկարգութիւններ չը ծագեն, կործանիչ անիշխանութիւնը գլուխ չը բարձրացնի, ամեն տեղ կատարուեն կառավարութեան օրէնքներն ու կարգադրութիւնները և կառավարութեան բարոյական հեղինակութիւնը բարձր լինի ժողովրդի բոլոր խաւերում ու շրջաններում։

Ռուսաստանում ստեղծուած վտանգաւոր դրութիւնը՝ Կովկասում արտայայտւում է աւելի ուժգին, աւելի սուր կերպով, շնորհիւ մեր երկրի մի քանի առանձնայատկութիւնների ազգային հողի վրայ ստեղծուած։

Այս ցաւալի երևոյթը ժառանգուել է հին ռէժիմից, որը դարերի ընթացքում Կովկասի ազգութիւնների մէջ ոչ թէ հոգեկան մտերմութիւն, փոխադարձ հաւատ ու յարգանք է զարգացրել, յանուն ընդհանուր շահերի և խաղաղութեան, այլ միշտ սերմանել է չարիքի սերմեր, միշտ թունաւորել է նրանց կեանքը, թշնամացնելով միմեանց հետ։

Զարբաստիկ հին կառավարութեան նշանաբանն է եղել «divide et impera» (բաժանիր և տիրիր)։ Եթէ կովկասեան ժողովուրդների մէջ ստեղծուած լինէր համերաշխութիւն, եթէ նրանց թոյլ տրուած լինէր միմեանց մերձենալ, միմեանց կարիքներն ու ցաւերը հասկանալ, այն ժամանակ հայի, թուրքի և վրացու միջև չէր ստեղծուի այն անդունդը, որը լցնելու և ազգերը միմեանց մօտեցնելու համար, այժմ հերոսական աշխատանքներ են հարկաւոր։

Ազգերի միութիւնը կազմում է նրանց ոյժը, իսկ անջատումը՝ թուլութիւնը։

Հին կառավարութիւնը իբր հակաժողովրդական լաւ էր հասկացել այդ ճշմարտութիւնը և նրան, ի հարկէ, ձեռնտու է եղել ազգերը միմեանցից բաժանել, այսինքն՝ թուլացնել, որպէս զի նրանց կառավարելը հեշտ լինի։

Կովկասեան ազգերի համերաշխութիւնը՝ գուցէ երբէք այնքան զգալի ու անհրաժեշտ չէ զգացուել, ինչպէս այժմ։

Եթէ Ռուսաստանի ազատութեան կարող է վտանգ սպառնալ հակայեղափոխական ոյժերից կամ պատերազմի կողմից, այստեղ, Կովկասում, այդ վտանգն աւելանում է շնորհիւ մեր տեղական ևս մի հանգամանքի՝—ազգային թշնամութեան, որը եթէ բռնկուի՝ կարող է զարհուրելի հրդեհ առաջ բերել։

Մեզ շրջապատող մթնոլորտը լի է այդ հողի վրայ ստեղծուած լուրերով, մեծ մասամբ սուտ, անհիմն ու առասպելական չափերով մեծացրած։

Այդ լուրերը դժբաղդաբար ջղայնացնում են ժողովուրդին, խանգարում նրա հոգեկան անդորրութիւնը, յուզում սրտերը և միմեանց հարևան ազգերի մէջ ստեղծում սուր յարաբերութիւններ և թշնամութիւն։

Քաղաքական կուսակցութիւնների և առհասարակ հասարակական գործիչների վրայ ծանրանում է բարոյական մեծ պարտականութիւն, ամենայն անձնուիրութեամբ միջոցներ ձեռք առնել ոչնչացնելու ազգերի թշնամութիւնը, հաստատելու փոխադարձ վստահութիւն հարևան ազգերի մէջ, արծարծելով այն միտքը նրանց մէջ, որ թշնամութիւնը չարիք է ամբողջ երկրի և ազգաբնակութեան համար, իսկ ներկայ պարագաներում պէտք է համարել այդ մի վնասակար երևոյթ նուաճուած ազատութիւնների դէմ։

Կովկասի տարբեր աշխարհայեացքի տէր ազգերի մէջ բնական յարաբերութիւններ ստեղծելու համար բաւական չէ միայն խօսել ու գրել, այլ հարկաւոր է և գործնական միջոցների դիմել։

Գործնական միջոցներից այդ նպատակի համար կարևոր է, որ նահանգական, գաւառական քաղաքներում և գաւառամասերում կազմուեն բանիմաց անաչառ անհատներից խառը ժողովներ թուրքերից ու հայերից, իսկ Վրաստանում՝ հայերից ու վրացիներից, վիճելի խնդիրներն ու տեղի ունեցած թիւրիմացութիւնները պարզելու և ապա ընտրել հաշտեցուցիչ մասնաժողովները (примирительныя камеры), որպէս զի նրանք քննեն այն հարցերը, որոնք խռովութիւն, դժգոհութիւն են յարուցանում տարբեր ազգութիւնների պատկանող հաստատութիւնների մէջ։

Ցանկալի է, որ այդ մասնաժողովների որոշմամբ հեռացուին և չէզոքացուին շրջանից այն անհատները, որոնք պարապում են պրովոկացիայով։ Ոչ պակաս ցանկալի է, որ ամեն մի սուտ լուր, որը կազմում է աղբիւր չարեաց և տարածւում է ժողովուրդի մէջ և մաքեր պղտորում, իսկոյն հերքուի մամուլի միջոցով կամ առանձին յայտարարութիւններով և տեղական լեզուներով։

Իսկ եթէ Անդրկովկասեան կոմիսարիատի անդամները պարբերաբար շրջեն երկրի զանազան մասերը, մանաւանդ այն շրջանները, որտեղ նկատւում են ներքին խռովութեան նշաններ, և իրենց հեղինակաւոր խօ

Եթէ մի հասարակութեան մէջ տասներկուսից մի զօրեղը կամենում է ուրիշին ճնշել և ստրկացնել՝ ես պարտաւոր եմ ի հարկէ համոզել բոլորին, որ թոյլ չտանք թոյլին ոտնատակ անելու։ Բայց եթէ իմ քարոզը անհետեանք է մնում և ուժեղը սկսում է ծեծել թոյլին՝ մի՞թէ ես իրաւունք ունիմ ձեռքերս ծալած նստելու այն համոզմունքով և այն պատճառով, որ ես առաջ կռուի դէմ էի և խաղաղութիւն էի քարոզում։ Հենց այն պատճառով, որ ես դէմ եմ թոյլին զոհելու ուժեղին, ես պիտի մէջ մտնեմ և օգնեմ թոյլին զօրեղի դէմ, թէև գիտեմ, որ թոյլի գըլխին գալիք բռունցքը կարող է իմ գլխին իջնել։ Ես հասկանում եմ, որ մարդ կարող է անձնական վիրաւորանքին չպատասխանել, բայց ձեռքերը ծալած նստել և մի կողմ քաշուել—աններելի անազնւութիւն է, ստորութիւն է։ Աշխարհում բռնութիւնն ապրում է հենց այսպիսի անտարբերութեան շնորհիւ։

Պատերազմի դէմ քարոզը ի հարկէ մօտեցնում է այն րոպէն, երբ մարդիկ կը գիտակցեն թէ պատերազմի իսկական պատճառը միշտ այն հանգամանքն է, որ մի կողմը կամենում է միւսի աշխատանքից օգտուել, ձգտում է տիրանալ ուրիշ երկրի ամբարած հարստութիւններին։ Հակամիլիտարական քարոզը կարող կը լինի գուցէ համոզելու, որ նոյն իսկ յաղթական պատերազմը վերջ ի վերջոյ աւելի վնաս է բերում յաղթողներին էլ քան թէ օգուտ։ Այժմ սակայն այս քարոզը չի կարող արգելք լինել պատերազմին, որովհետև դեռ ամեն երկրում կան տարրեր, որոնք պատրաստ են ուրիշի բարիքը յափշտակել և սրա մէջ գտնում են և իրենց օգուտը։ Գործադուլի երկիւղը կամ սպառնանքը կարող են առժամանակ միայն յապաղեցնել վտանգը, բայց երբ, ասում էի միշտ ես, զօրաժողով կը յայտարարուի՝ բոլորը կըշտապեն, որովհետև ամեն մէկը գիտէ, որ ուշացումը թշնամուն կը տայ մի աւելորդ երկիր և զոհերի թիւը հարիւր հազարներով կաւելացնի։

Իմ բարեկամ ֆրանսացիները սակայն ասում էին թէ Գերմանիայում կան երեք և կէս միլիոն սոցիալիստ և մենք մեր քարոզներով կը յաջողենք, որ նրանք հրաժարուեն օգնելու գերմանական կապիտալիստներին՝ կողոպտելու Ֆրանսիան։ Երբ ես ապացուցանում էի, որ այս չի լինի՝ նրանք ասում էին—շատ լաւ, թող չլինի, բայց չէ՞ որ մէկը պիտի նախաձեռնութիւն վերցնի, մենք կսկսենք և թող ինչ ուզում է լինի։ Այս առարկութիւններին ես ասում էի, թէ նրանք իրենք կսպառազինուեն և կզինւագրեն, երբ Գերմանիան իւր սոցիալիստների համաձայնութեամբ վայրենաբար կսկսի կռիւը։ Դուք, ասում էի նրանց, քիչ էք ճանապարհորդել և չգիտէք՝ ինչ կը նշանակի օտար ազգի իշխանութեան տակ ապրել։ Սակայն վերջին ժամանակներս ֆրանսիացիք մի փոքր սթափուել են իրենց սխալներից և ֆրանսացի պատգամաւոր սոցիալիստ Կոմպեր Մորէլը անձամբ համոզուել է, որ գերմանացիք ֆրանսիացի զինուորներին սպանելուց առաջ տանջում էին Սանլիսում և ասում է, որ չորս միլիոն գերման սոցիալիստներից մէկ միլիոնը Բելգիա և Ֆրանսիա մըտած զօրքերի մէջ են։

Սակայն ֆրանսացի հակամիլիտարիստների մեծագոյն մասը այնպէս վարուեցին, որպէս կարելի էր նախատեսնել։

Պատերազմի յայտարարութիւնից մի քանի օր յետոյ Պարիզից իմ մօտիկ բարեկամ սոցիալիստներից ստացայ նամակներ։

Մէկը գրում էր, որ ես արդարացի եմ, միայն կռիւը և դիմադրութիւնը կարող չէ վերջ տալ գերմանական միլիտարիզմին. միւսը թէ՝ նա սանիտար է, երրորդը թէ՝ նա հասարակ զինուոր է։ Նոյնպէս վարուեցին և բելգիացիք։ Մինչև վերջին րոպէն նրանք պատերազմի դէմ էին։ Բայց երբ նուաճողների վայրենի հորդաները ներս մտան՝ նրանք հերոսաբար սկսեցին պաշտպանել հայրենի գիւղերը և քաղաքները,

Դուք այժմ գիտէք, որ Գերմանիան առանց իսկ հեռաւոր չարժառիթի մտաւ Բելգիա, որովհետև այս ճանապարհով կարծում էր հեշտութեամբ նուաճել իւր ատելի Ֆրանսիան. գիտէք թէ գերմանացիք ինչ միջոցներով են նուաճում, ինչպէս են վըրէժխնդիր լինում, երբ ստիպուած են լինում յետ նահանջելու քաղաքներից և գիւղերից, որ նրանք արդէն իրենցն են համարում։ Ասացէք այժմ՝ կամենում էք արդեօք, որ Ֆրանսիան և Բելգիան ազատուեն, որ գազանացած գերմանացիք հեռանան այդ երկրներից։

Եթէ կամենում էք, ուրեմն խօսելու տեղ չի մնում, վիճելի խնդիր չկայ։

Դ. ԵՆԳԻԲԱՐԵԱՆ

(Շարունակելի)

## ԳԻՏԱԿԱՆ

### ԳՈՋԱՄԱՐՏԸ *)

Թունաւոր գազերը ամենից առաջ ազդում են շնչառութեան վրայ։ Մարդ շատ դժուարութեամբ է շնչում, որովհետև գազերը խիստ գրգռում ու կծկում են շնչառութեան խողովակները, այս պատճառով էլ օդը դժուարութեամբ է թափանցում թոքերը։ Թունաւորուածը անմիջապէս խեղդւում է կամ մահանում՝ արեան շրջանառութեան խանգարումից և թոքերի ուռչելուց։ Մարդ կապտում է, շունչը կտրւում, երևում է արիւնախառն փրփուր բերանում և մեռնում է սովորաբար մի քանի ժամ կամ մի քանի օր յետոյ։ Իսկ եթէ մարդը կարողանում է տանել առաջին շըրջանը, սկսւում է բրոնխիտ, թոքերի բորբոքում, սրտի թուլութիւն և այլն։ Շատ երկար է տևում սրտի թուլութիւնը։ Պատահել են դէպքեր, երբ հիւանդներն ըստ երևոյթին առողջացած՝ վերադարձել են իրենց գործին, բայց երկար չի անցել և նրանք մեռել են սրտի կաթուածից։ Այս իսկ պատճառով գազերով թունաւորուածներին երկար են պահում հիւանդանոցներում։ Պատահում է երբեմն, որ թունաւորուածները բաւական շուտ բժշկւում են և շատ շուտով անցնում են սուր հետևանքները։ Թունաւոր գազերը ազդում են և տեսողութեան վրայ՝ առաջացնելով աչքերի բորբոքում, արտասուքի առատ հոսում, թուլութիւն և այլն։

Գազերից պաշտպանուելու համար փախչելը անմտութիւն է, որովհետև նախ նա շատ տարածւում է, ապա շարժողութիւնն

արագացնելով շնչառութիւնը, աւելի մեծ քանակով է կուլ գնում թունաւորուած օդը։ Իսկ խրամատների և ուրիշ փոսերի մէջ պահուելն աւելի վտանգաւոր է, որովհետև այդպիսի տեղերում թունաւոր գազերը օրերով մնում են։

Գազերից պաշտպանուելու համար օգտւում են կրակից։ Խարոյկներից տաքացած օդը վեր է բարձրացնում թունաւոր գազերը։ Տարաբախտաբար պատերազմի ժամանակ խարոյկներ վառելը միշտ էլ յարմար չէ...

Եւ որովհետև խոնաւութիւնը կլանում է գազերը, այս պատճառով ջուր ցանելով մասամբ հասնում են նպատակին։

Գազերից պաշտպանուելու ամենաապահով միջոցն է դիմակը, որ թրջում են սոդայի (Natr. carbonicum), հիպոսուլֆիտի և քաղցրիտի (գլիցերին) որոշ տոկոսի լուծուածքով, քամում, մզում և պահում են ռետինէ տոպրակի մէջ։ Եթէ դիմակը գործածելիս արդէն չորացել է, պէտք է թրջել շշի միջի դեղով, որ դիմակի հետ միասին տրւում է զինուորին։ Իսկ եթէ այդ չկայ, պիտի թրջել ջրով կամ մէզով։

Եթէ հակագազի դիմակ չկայ, այն ժամանակ ջրի մէջ պէտք է թրջել վերարկուն, կամ մի ուրիշ հանդերձ և գլուխը ամուր փաթաթել նրա տակ։ Կարելի է և թաց խոտի կամ յարդի մէջ թաղել գլուխը։ Եղել են դէպքեր, երբ այսպիսի հասարակ միջոցներով մարդիկ ազատուել են օրհասական վտանգից։

Մանրած ածուխը, փխրուն հողը և չոր տորֆը նոյնպէս լաւ ծծում են գազերը, բայց տարաբախտաբար նրանց օգտագործելու համար առայժմ յարմար գործիք չկայ։

Բայց հարկ եղած դէպքում կարելի է թաշկինակով կամ մի ուրիշ շորով ծածկել երեսը, որ շնչառութեան ժամանակ այս նիւթերը չմտնեն թոքերը, ապա գլուխը մտցնել տորֆով կամ մանրած ածուխով լցրած տոպրակի կամ գլխանոցի (բաշլղ) մէջ։ Բայց անհրաժեշտ է, որ գազեր կլանող այս նիւթերը, որոնց միջոցով շնչառութիւնն է կատարւում, գազերից պաշտպանուելու համար բաւականաչափ հաստ լինեն, մօտ 4—5 վերշոկ։ Գազերի վտանգն անցնելուց յետոյ պիտի հանել դրսի հանդերձը, որի մէջ ծծուած գազերը բաւական երկար են մնում։ Իսկ խրամատները, խրճիթները և միւս փոսերը պիտի մաքրել գազերից՝ ջուր և ուրիշ գազեր կլանող նիւթեր սրսկելով։

Բժ. Ալ. Տէր-Յովհաննիսեան

## Գեղարուեստ

## ԺԵՐՄԱԿ ՑԱՐԱՍԻ

Արծաթ թևերով, նուրբ, մելամաղձիկ
Իրիկունն անուշ շղարշւում է ցած,
Որպէս պոէտի վիշտը գեղեցիկ,
Որպէս երազուն օրերս անցած...

Այս սուրբ, հոգեխօս խաղաղութեան մէջ,
Որպէս մելանոյշ կայլակը առուի,
Որպէս աչերից ցօղերը անշէջ,
Որպէս դիւթական հէքիաթը հարաւի,—

Այն լոյս աղջիկը երգում է դարձեալ
Ճերմակ ցարասի սոնէտը ոսկի,
Ցուշերիս նման մեղմիւ ու պայծառ
Ցօղում է վրաս թախիծն այն երգի...

Ննջո՜յշ, քաղցրասիւք, հէ՜գ ու թափանցի՜կ
Իրիկունը յուշի՜կ ծաւալւում է ցած,
Որպէս պոէտի սէրը գեղեցիկ,
Որպէս լուսեղէն օրերս անցած։

Թիֆլիս — ԱՆՈՒՐՋ

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

«Համբաւաբեր»-ի մեծարգոյ խմբագրութեան

Կ. Հ. Բ. Ը-թեան Շուլաւէրի ճիւղի վարչութիւնը խոնարհաբար խնդրում է հրատարակել հետևեալը.—

Թիֆլիսում սովորող տեղւոյս աշակերտ-աշակերտուհիները կազմակերպեցին յօգուտ Ընկերութեանս բացած գրադարանի մի ներկայացում, որից զուտ արդիւնք գոյացաւ 268 ռ. 20 կ.։ Յայտնում ենք մեր շնորհակալութիւնը ներկայացումը կազմակերպող աշակերտութեան։

Տեղւոյս Փոխատու Խնայող. Ը-թեան ընդհանուր ժողովը իւր տարեկան օգուտից տուեց 30 ռ. 30 կ., հանգուցեալ Մովսէս Ղարամեանցի ժառանգները՝ 20 ռ., որոնց Վարչութիւնս յայտնում է իւր շնորհակալութիւնը։

Նախագահ վարչ.՝ Վ. ՄԻՐԱՔԵԱՆ
Քարտուղար՝ ՅՈՎՀ. քահ. ՎԵՐԱՆԵԱՆ

## ՎՐԻՊԱԿ

«Համբաւաբեր»-ի № 18-ում Ս. Յարութիւնեանի «Արդարութեան ձայնը կը բողոքէ» յօդուածի չորրորդ սիւնակի 6-րդ տողում «եթէ իսկապէս մտադրութիւն կայ պատուով վերջացնել պատերազմը», պէտք է լինի «այս ձեւով վերջացնել»։ Նոյն սիւնակի 39-րդ տողում տպագրուած «Ազատ Ռուսաստանը» պէտք է լինի «Ազատ Հայաստանը»։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ
Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ



Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1